չել մեծ պետութեանց զինեալ ուժերուն անմիջական կրճատումը ։

Իրարու հակասող բազմաթիւ կէտեր կան այս երկու օրակարգերուն մէջ, այդ պատճառով ալ կը նախատեսուին ծանր վիճաբանութիւններ։ Սակայն բարենշան կը համարուի ժողովին առաջին օրուան մթնոլորտը ։ Լաւատեսներ կը կարծեն թէ անկարելի պիտի չըլլայ հասկացողութիւն մը ապահովել փոխադարձ զիջումներով, կազմելու համար Չորսերու խորհրդաժողովին վերջնական օրակարգը ։

## ՔԱՆԻ ՄԸ ՏՈՂՈՎ

ՔԱՌԱՍՈՒՆ ԵՐԿՈՒ Պուլկարներ Եուկոսլաւիա ապաստանած են վերջին երկու շաբաթներու ընթացքին։ Փախստականները, որոնց մէջ կան ուսանողներ, բանուորներ, գիւղացիներ եւ ոստիկաններ, կը պատմեն թէ դիմադրական բազմաթիւ խումբեր կը գործեն Պուլկարիոյ մէջ եւ կը կռուին իշխանութեանց դէմ ։

ՔՈՐԷԱՅԻ կեդր. ճակատամասին վրայ կացութիւնը կը մնայ անփոփոխ։ Թէեւ ՄԱԿի ուժերը տեղական յարձակումներ կը փորձեն, բայց ետ կը մղուին կարմիրներու կողմէ, որոնք լաւ ամրացած են իրենց պաշտպանողական դիրքերուն վրայ ։ Սէուլի շուրջն ալ կացութիւնը հանդարտ է ։ Կը հաղորդուի թէ նոր ուժեր հասած են այնտեղ ։ — Չինական կառավարութիւնը 250.000 նոր երիտասարդներ առած է զէնքի տակ եւ հրամայած է զօրաշարժի ենթարկել նաեւ կէս միլիոն գիւղացիներ։

« ԱՄԵՐԻԿԱՅԻ ՁԱՅՆԸ» (ռատիօ) աւելի ընդարձակելու համար, նախագահ Թրումըն 97 միլիոն տոլարի նոր վարկ մը պահանջեց ։

ԻՏԱԼԻՈՅ ընկերվարական վարիչներէն Իկնացիօ Սիլոնէ կը տեղեկացնէ թէ վերջին շաբաթներու ընթացքին տասը հազար անդամներ հրաժարած են համայնավար կուսակցութենէն, ինչ որ նշանակելի երեւոյթ մը կը համարուի։ Հրաժարումները կը շարունակուին երկրին գլխաւոր կեդրոններուն մէջ։

ԳԵՐՄԱՆԱԿԱՆ առաջին զինուորական հանդէսը (պատերազմէն վերջ) լոյս տեսաւ Մարտ 6ին, «Եւրոպական ապահովութիւն» անունով։ Պարբերականը կը պարունակէ նաեւ քաղաքական տեսութիւններ։ Մասնագէտ մը բաղդատելով օդանաւային ուժերը, կ'եզրակացնէ թէ ամերիկեան օդատորմիղը կը գերազանցէ սովետականը, ամէն տեսակէտով ։

ԱԼԵՔ ՆՈՒՐԻՃԱՆԵԱՆԻ կատարած սպանութեան եւ ինքնասպանութեան մասին կարգ մը նոր լուրեր հաղորդելով, տեղական թերթերը կ'ըսեն թէ արիւնալի ողբերգութեան միակ վկան էր հինգ ամսուան նրախայ մը։ «Իր աչքերուն առջեւ էր որ մեծ հայրիկը սպաննեց մեծ մայրիկը, եւ մայրը պատուհանէն վար նետուեցաւ»։ Ալեք Նուրիճանեան երկար ատենէ ի վեր կը դանդատէր իր կնոջմէն, զաւկէն եւ հարսէն թէ այլեւս ընտանիքի պետ չէն նկատեր զինքը։ Միշտ կ'ըսէր. — « Ես այլեւս տէր չեմ իմ տունիս մէջ, պէտք է վերջ դնել այս վիճակը»։ Ամէնքն ալ իր մտային տկարութեան կը վերագրեն այս ահռելի սպանդը ։— Երկու վիրաւորները ամէն վտանգ անցուցած կը համարուին ։

ԱՄԵՐԻԿԵԱՆ բանակին մէջ պիտի առնուին 2500 եւրոպացի կամաւորներ, մեծ մասով Եւրոպա բնակող եւ Երկաթեայ վարագոյրի միւս կողմէն փախած տարագիրներէն։ Հինգ տարի վերջը, այս կամաւորները պիտի կրնան ամերիկեան քաղաքացի դառնալ։

ԱՆԻԷՌԻՆ Պ. Յակոբ Ադամեան կը գրէ թէ Փետրուար 26էն ի վեր անհետացած է շրջուն վաճառորդ մը, Սիվրիհիսարցի Յակոբ Ճէնտէրէճեան որ ինքնաշարժի արկած մը անցուցած էր քանի մը ամիս առաջ։ Կը խնդրուի Փարիզի, Լիոնի, Մարսէյլի, Սէն Շամոնի, Պոռտոյի եւն. հայ շրջուն վաճառորդներէն տեղեկացնել «Յառաջ»ի միջոցաւ։ 47 տարեկան է, երկայնահասակ ։

---



---



---



---



---



---

ԾՆՈՒՆԴ.— Տէր եւ Տիկին Անուշաւան Շտիկեան ուրախութեամբ կը ծանուցանեն իրենց երկրորդ զաւկին ԺԻՐԱՅՐի ծնունդը, 5 Մարտին ։ Այս առթիւ «Յառաջ»ի տարածման ֆոնտին կը նըւիրեն 3000 ֆրանք ։

---

Պ. Սարգիս Ղազարեան, Պ. Միհրան, Մառիռոզ եւ Ժանիկ Ղազարեաններ, Տէր եւ Տիկին Պէկեան (Մարսէյլ), Պ. Գեղամ Ադամեան (Երեւան), խորունկ ցաւով կը ծանուցանեն մահը իրենց կնոջ, մօր, մեծ մօր, զոքանչին եւ հարսին՝

ՏԻԿԻՆ ԲԵՐՍԱՓ ՂԱԶԱՐԵԱՆի

(Ծնեալ Յովհաննէսեան)

մահը, որ տեղի ունեցաւ 2 Մարտին, 60 տարեկանին Ռուէնի իր բնակարանին մէջ ։

Յուղարկաւորութիւնը կատարուեցաւ Կիրակի, 4 Մարտ եւ մարմինը անփոփուեցաւ տեղւոյն գերեզմանատունը։

Ծանօթ.— Մահազդ չստացողներէն կը խնդրուի ներկայս իբր այդ նկատել :

---



---

ՓՈԽԱՆ ԾԱՂԿԵՊՍԱԿԻ.— Պ. Սարգիսեան, Տիկին Ներկարարեանի մահուան առթիւ հազար ֆրանք կը նուիրէ Անթիլլիի ծերանոցին, փոխան ծաղկեպսակի։ Ստանալ «Յառաջ»էն ։

---


Le Gérant : A. NERCESSIAN

Imprimerie DER AGOPIAN 17 rue Damesme – (13)


---

Հ. Յ. Դ. ԸՆԴՀ. ԺՈՂՈՎ

Հ. Յ. Դ. Արեւմտ. Եւրոպայի Կ. Կոմիտէն արտակարգ ընկերական ընդհ. ժողովի կը հրաւիրէ Փարիզի շրջանի բոլոր ընկերները, այս շաբաթ, 10 Մարտ, ժամը 20.30ին, Քատէ սրճարանի վերնայարկը։ Բոլոր ընկերներու ներկայութիւնը անհրաժեշտ է։

## ՅՈՒՇԱՏԵՏՐ

ՇԱՎԻԼ.— Ֆր. Կապ. Խաչի մասնաճիւղի ընդհ. ժողովը՝ երկուշաբթի 12 մարտ, ժամը 21ին, դպրոցին սրահը։ Խիստ կարեւոր օրակարգ։

ՄԱՐՍԷՅԼ.— Կապ. Խաչի քաղաքի մասնաճիւղը ընդհ. ժողովի կը հրաւիրէ իր անդամ եւ անդամուհիները այս չորեքշաբթի ժամը 3ին «Ահարոնեան» ակումբը։ Ներկաներուն թիւը մեծամասնութիւն պիտի համարուի ։

ՓԱՐԻԶ.— Հ. Յ. Դ. Նոր Սերունդի «Ահարոնեան» խումբի դասախօսութիւնը այս հինգշաբթի, ժամը 21ին, սովորական հաւաքատեղին։ Կը խօսի ընկեր Վ. ՕՇԱԿԱՆ։ Նիւթ՝ «Սփիւռքի գրականութիւնը»։ Հայերէնի դասընթացք ժամը 8–9:

ՎԻԷՆ.— Հ. Յ. Դ. կոմիտէի ընդհ. ժողովը, այս կիրակի առաւօտ ժամը 9ին, «Հ. Օհանջանեան» սրահին մէջ։ Կարեւոր օրակարգ։ Կը խընդրուի ճշդապահ ըլլալ ։

ԼԻՈՆ.— Հ. Յ. Դ. «Վարանդեան» կոմիտէի ընդհ. ժողովը՝ այս ուրբաթ ժամը 20.30ին, դըպրոցին սրահը 78 rue Rabelais։ Կարեւոր օրակարգ։

ՎԱԼԱՆՍ.— Հ. Յ. Դ. Շրջ. կոմիտէն ընդհ. ժողովի կը հրաւիրէ բոլոր ընկերները, այս շաբաթ ժամը 20.30ին, Ա. Ահարոնեան ակումբը։

ՀԱՄԱ-ԽԱՐԲԵՐԴՑԻԱԿԱՆ Միութեան Կարտանի մասնաճիւղի ժողովը՝ այս կիրակի կէսօրէ վերջ, ժամը 3ին, Կարտանի հայկ. դպրոցի սրահին մէջ։ Պարտաւորիչ ներկայութիւն։ Կը հրաւիրուին նաեւ ոչ – անդամ Խարբերդցիները ։

ԴՊՐՈՑԱՍԷՐ ՏԻԿ. վարժարանի Վարդանատօնի առթիւ սարքուած ներքին հանդէսը, որ յետաձգուած էր, տեղի պիտի ունենայ, կիրակի 11 Մարտ, ժամը 3ին, վարժարանին մէջ ։

---



---



---



---



---

ըլլայ 18.200 ֆրանք Փարիզի մէջ (նախապէս 16.400) : Այս նոր սակը մօտաւորապէս կը համապատասխանէ ոչ – համայնավար սէնտիքաներու պահանջին, իսկ Աշխատանքի Դաշնակցութիւնը կը պահանջէ 20.125 ֆրանք :

Նախարարական խորհուրդը իր որոշումը հրատարակելով պաշտօնաթերթին մէջ, միեւնոյն ատեն կը հրահանգէ փոխադրութեանց եւ ճարտարարուեստի նախարարներուն՝ անմիջապէս բանակցիլ երկաթուղիներու եւ ուրիշ հանրային սպասարկութեանց սէնտիքաներուն հետ, վերջ տալու համար գործադուլներուն :

Հրատարակուած լուսաբանութեանց համաձայն, նուազագոյն օրապահիկի յաւելումը չի նշանակեր թէ բոլոր աշխատավարձքերը պիտի բարձրանան 11.50 առ հարիւր համեմատութեամբ : Նուազագոյնէն վեր եղած աշխատավարձքերու յաւելումը համեմատական պիտի ըլլայ իրենց քանակին, այնպէս որ, բարձր աշխատավարձքի յաւելումը կրնան հաշուել 5 առ հարիւր կամ աւելի պակաս : Այս խնդիրը պիտի կարգադրուի բանակցութիւններով եւ սակարկութիւններով, համաձայն իւրաքանչիւր առեւտրական կամ ճարտարարգործական ճիւղի կացութեան :

## 3000 վայրաչուներ իջան

### ՍԷՈՒԼԻ ԿՌՆԱԿԸ

ՄԱԿի ուժերէն 3000 վայրաչուներ (փառաշիւթիստ) իջան չինեւքորէական գիծերուն ետեւը, Սէուլի հիւսիսային կողմը, պաշարելու համար 20 հազար կարմիրներ, որոնք կը գտնուին 38րդ զուգահեռականին հարաւը : Ութերորդ բանակի հրամանատարը, զօր. Րիճուէյ, անձամբ մասնակցեցաւ այս գործողութեան, թեթեւաշարժ օդանաւի մը վրայ վարելով զինուորներու վայրէջքը անամպ երկնքի մը տակ, Մունզանի շրջակաները : Վայրաչուներու իջնելէն կէս ժամ վերջը, զօր. Րիճուէյ իջաւ ռազմադաշտ, ճշդելու համար իր զինուորներուն դիրքերը : Կարմիրները ոչ մէկ դիմադրութիւն ցոյց տուին եւ շատ քիչ թիւով վիրաւորներ կան :

Միաժամանակ զրահապատ երկու մեծ զօրամասեր կը գործեն Սէուլի հիւսիսային եւ հիւսիսարեւելեան կողմը, թակարդին կողերը գոցելու համար : Բրիտանական հրասայլերը արդէն կապ հաստատեցին վայրաչուներուն հետ : Մունզան պարպուած է կարմիրներու կողմէ :

Վայրէջքի գործողութեանց մասնակցեցան 145 փոխադրական օդանաւեր, որոնք, ալիք ալիք, սկսան զինուորները թափել առտուան ժամը 9ին : Վերջին երկու ալիքներուն, օդանաւերը փոխադրեցին նաեւ թնդանօթներ, փոքր ինքնաշարժեր, եւայլն :

Զօր. Րիճուէյ իր բանակատեղին վերադառնալով յայտարարեց, թէ իրենց նպատակն է «սպաննել կարմիրները կարելի եղածին չափ մեծ թիւով » :

X Զօր. Մէք Արթըր յայտարարեց թէ համայնավար Չինաստանը «զինուորական փլուզումի մը դատապարտուած է», եթէ Ազգաժողովը վճռէ շարունակել Քորէայի պատերազմը : Աւելցուց թէ ինք պատրաստ է բանակցելու, ի խնդիր հաշտութեան :

### ԶԱՏԿԻ ՏՕՆԵՐԸ ԵՐՈՒՍԱՂԷՄԻ ՄԷՋ

Երուսաղէմէն կը հաղորդեն թէ Արաբները Զատկի արարողութեանց առթիւ բացառիկ «զինադադար» մը շնորհեցին Քրիստոնեաներուն :

Բազմաթիւ եկեղեցականներ եւ աշխարհականներ կ'անցնին Իսրայէլ – Յորդանան սահմանը, ներկայ ըլլալու համար Զատկի արարողութեանց : Լատին պատրիարքը Ալպեռթօ Կօռի առաջնորդեց հանդիսաւոր թափորը, Գողգոթայէն դէպի Մայր Եկեղեցին, թաղման արարողութեան : Եաֆայի Դուռը որ կը բաժնէ Իսրայէլը արաբական սահմանէն, պիտի բացուի Զատկի կիրակին, որպէսզի թափոր մը անցնի, ներկայ ըլլալու համար Ս. Յարութիւն եկեղեցւոյ պատարագին :

ՔԱՆԻ ՄԸ ՏՈՂՈՎ

---

ՉՈՐՍ ՓՈԽԱՆՈՐԴՆԵՐԸ ուրբաթ օրուան դոնփակ ժողովէն վերջ, նիստ գումարեցին շաբաթ օր : Զրոյց կը շրջէր թէ թիւրիմացութիւններ ծագած են մէկ կողմէ անգլեւֆրանսական, միւս կողմէ ամերիկեան պատուիրակներուն միջեւ, բայց անմիջապէս հերքուեցաւ : Դոնփակ նիստը, որ առաջինն էր, տեւեց 4.20 ժամ : Ներկայ էին միայն պատուիրակներուն անմիջական խորհրդականները եւ թարգմանները :

ԱԶԳ. ԺՈՂՈՎԸ իր նիստերը յետաձգեց մինչեւ ապրիլ 5, Զատկի արձակուրդին առթիւ :

ԵՐՈՒՍԱՂԷՄԷՆ կը հեռագրեն թէ երաշտը ահագին վնասներ կը պատճառէ ամբողջ երկրին մէջ, ծանրացնելով գաղթականներու թշուառութիւնը :

ԴԱԴԱՐՄԱՆ ԴԱՏԱՊԱՐՏՈՒԵՑԱՒ Փարիզի հունգարերէն թերթը, կառավարական որոշումով :

## Նոր Սերունդի Օրը

Կազմակերպուած Հ. Յ. Դ. Նոր Սերունդի Փարիզի մասնաճիւղին կողմէ : Կիրակի 1 Ապրիլ, ժամը 3էն 12 Mairie du XIի մէջ, métro Voltaire :

Կը նախագահէ Կեդր. վարչութեան ներկայացուցիչը :

Կը խօսի ընկեր ՎԱՀԷ ՕՇԱԿԱՆ

Գեղարուեստական բաժնին կը մասնակցին՝ ընկերուհի Մ. ԿԱՌՎԱՐԵՆՑ (երգ), Օր. Ս. ՏՕՆԱՊԵՏԵԱՆ (դաշնակ), Ֆ. ԱՂԱԶԱՐԵԱՆ (ջութակ) : Ծիծաղաշարժ զաւեշտ մը երեք արար՝

5 ԹԻՒ ԽԵԼԱԳԱՐԸ

Մասնակցութեամբ Փարիզի մասնաճիւղի ընկերներուն :

Պարահանդէս Կ. ՍԱՐԵԱՆի նուագախումբով : Առատ պիւֆէ, մատչելի գիներով :

## «ՅԱՌԱՋ»ի 25ամեակին առթիւ

Շնորհակալութեամբ ստացանք. —

Ընկեր Քերովբէ Առաքելեանէ 5000 ֆրանք :

Ընկերը, որ Մեքսիկայէն Փարիզ եկած էր իր տիկնոջ հետ, երէկ առաւօտ օդանաւով մեկնեցաւ Հալէպ, ներկայ ըլլալու համար Հ. Մ. Ը. Մ.ի տարեկան մեծ մարզահանդէսին (այսօր, կիրակի) :

### ՓԱՐԻԶԻ ՀԱՅՈՑ ԵԿԵՂԵՑԻԷՆ

ԶԱՏԻԿ. — Կիր., Ճրագալոյց Յարութեան սկզբ. ժամը 7.30ին, Եկմալեան քառաձայն Ս. պատարագ ժամը 10ին :

Ճրագալոյց Մեռելոց 26 Մարտ, Բշ. Ս. պատարագ ժամը 10ին : Հոգեհանգիստ համօրէն ննջեցելոց : (Կնիք)

### ԹԱՏՐՈՆ ՊԷԼՎԻԼԻ ՄԷՋ

27 Մարտ, երեքշաբթի երեկոյ ժամը 9ին, Սինէմա Ֆլօրիտայի մէջ, 373 rue Pyrenées, մեթրօ Pyrenées

Թրագօշ եւ Ա. Գմբէթեան կը ներկայացնեն առաջին անգամ ըլլալով ԿԵՂԾ ՓԱՇԱՆ

Զուարթ օփերէթ երգերով ու պարերով :

Կը մասնակցին Լ. Սապոնճեան, Գարագաշ, Օր. Տոլմաճեան, Քէշիշեան :

Մուտքը 150 եւ 100 ֆրանք :

Մօտօք. — 3 Ապրիլին Իսի, Սինեմա Ալհամպրայի մէջ «Աշուղին սէրը» երաժշտական թատերգութիւն մը :

ԿԸ ՓՆՏՌՈՒԻ. — Քղիէն Ապողնաք գիւղէն Սեդրակ Գրիգորեան կը փնտռէ հօրեղբօրորդին՝ Երուանդ Նաճարեանը, հօրը անունը Գրիգոր : Կը կարծուի թէ Նիսի շրջանը կը գտնուի : Իմացնել Գէորգ Գափոյեանի, 138 rue du Dr. Cauvin, St. Barnabe. Մարսէյլ, (B. du R.) :



ՑՈՒՑԱՏԵՏՐ

---

Ֆ. ԿԱՊ. ԽԱԶԻ Պանեէօ Բաշանի ժողովը այս երեքշաբթի ժամը 20ին, ընկեր Մ. Ալթունեանի բնակարանը, 17 rue Ampère, Բաշան : Կարեւոր օրակարգ :

ՆԿԱՏԻ ՈՒՆԵՆԱԼ. — Դերասան Տրդատ Ներշանեան ԱՊՐԻԼ 30ին կը ներկայացնէ ՊԱՂՏԱՍԱՐ ԱՂԲԱՐ :



Le Gérant : A. NERCESSIAN
Imprimerie DER AGOPIAN 17 rue Damesme – (13

